ծաղուլ մը տեղի ունեցաւ շաբաթ օր՝ արաբական գործադիր մարմնի հրահանգով: Ցոյցերը վրդովիչ հանգամանք ունէին մանաւանդ Երուսաղէմի, Հայֆայի եւ Եաֆայի մէջ:

Բոլոր քաղաքներու մէջ ամբողջ օրը Արաբները սեւ դրօշակ պարզեցին իրենց տուներուն, խանութներուն եւ մզկիթներուն վրայ: Զանազան թաղերու մէջ մեծ վերտառութիւններ փակցուած էին պատերը՝ «Անկցի՛ Պալֆըրի Յայտարարութիւնը» մակագրութեամբ:

Թափօրներ շրջեցան քաղաքին մէջ, առանց սակայն կարգը խանգարելու:

Հայֆայի մէջ հարիւրաւոր իսլամ եւ քրիստոնեայ Արաբներ համախմբուեցան կառավարչատան մօտ եւ պոռացին. «Անկցի՛ Պալֆըրի յայտարարութիւնը»: Պզտիկ տղաներ ալ փողոցներու մէջ կը պտտէին՝ «Սպաննեցէ՛ք Հրեաները» գոչելով:

Անգլիական քննիչ մարմինը, որ քննական պտոյտներ կը կատարէ Պաղեստինի մէջ՝ երկու ամիս առաջուան խռովութեանց պատասխանատուները երեւան հանելու համար, Պէյսանի մօտ դիմաւորուեցաւ արաբ ձիաւորներու կողմէ, որոնք նոյնպէս կը կրէին «Անկցի՛ Պալֆըրի Յայտարարութիւնը, կեցցէ՛ անգլեւարաբ միութիւնը» վերտառութեամբ դրօշակներ:

Եգիպտոսի ազգայնական թերթերը սեւ շրջանակներով հրատարակուեցան շաբաթ օր, Պաղեստինի արաբ բնակչութեան եւ իսլամական աշխարհի բուռն զայրոյթը արձանագրելով Պալֆըրի Յայտարարութեան [տարեդարձին առթիւ:

Անգլիական կառավարութիւնը՝ նոր խռովութեանց առաջքն առնելու համար, Մալթայէն դէպի Եաֆա ճամբայ հանեց Րամիլլիըս զրահաւորը, 32,500 թոնօ տարողութեամբ, զինուած 15 մատնաչափնոց թնդանօթներով, որուն մէջ կան 1000 անգլիացի սպայ եւ զինուոր:

Կը յուսացուի թէ այս զրահաւորին ներկայութիւնը Պաղեստինի ջուրերուն մէջ, պիտի կրնայ արգիլել հրէական նոր ջարդերը:

## Մահապատիժներր Ռուսիոյ մէջ

Մոսկուայէն նոր հեռագրի մը համաձայն, խորհրդային իշխանութիւնները մահուան դատապարտեցին 14 հոգի, որոնց 2ը քահանայ: Պէնզայի նահանգին մէջ, հրացանազարկ եղան երեք գիւղացիներ, որոնք կրակի տուած էին շուրջ քսան հաւաքական ագարակներ, պատճառ դառնալով 10 հոգիի մահուան: Երկու քահանաները կ'ամբաստանուէին թէ գրգռած են Պսկոֆի շրջանի բնակիչները:

Մոսկուայի թերթերէն մէկը կը գրէ թէ ելմտական գործավարութեան մէջ երեւան հանուած է «խորհրդային իշխանութեան թշնամիներու ամբողջ բոյն մը»: Այս «թշնամի»ներու կարգին կը գտնուին գիտնական Զաբիէցկի եւ Սմիրնոֆ: Այս վերջինը՝ բոլշեւիկեան ցոյցի մը մասնակցելու համար ստացած հրաւէրին պատասխանելով ըսած է. «Պիտի երթամ՝ երբ կախեն համայնավարները»:

## Ո՞վ սպաննեց Րիկօտէնը

Լիլի դատական իշխանութիւնները, Րիկօտէնի դիակը գտնուելէ 52 օր յետոյ,վերջապէս ղրկեցին իրենց տեղեկագիրը: Կը հաստատուի թէ Րիկօտէնի բաճկոնակին վրայ արեան հետք մը կայ եւ հագուստին վրայ գտնուած են փոշի եւ մուշտակի մազեր, ինչ որ ենթադրել կուտայ թէ սպաննուած ատեն Րիկօտէն կը գտնուէր մուշտակավաճառի մը խանութին մէջ: Րիկօտէն գաւազանի կամ բիրի ինը հարուած ստացած է գլխուն՝ երբ դեռ գլխարկը գլուխն էր, յետոյ խեղդուած է իր իսկ վզնոցով: Սպանութիւնը տեղի ունեցած է առտուան նախաճաշէն երեք ժամ կամ կէսօրուան ճաշէն հինգ ժամ յետոյ: Ստամոքսին կամ աղիքներուն մէջ թոյնի հետք չէ գտնուած:

Րիկօտէնի կօշիկներէն մէկուն կրունկին վրայ գտնուած է ձեռքի հետք մը, որ կարեւոր կը նկատուի:

Հարցաքննիչ դատաւոր Մաթիֆաս լսեց քանի մը նոր վկաներ, որոնք բոլորն ալ Ալմազեանի ի նպաստ վկայութիւններ տուին:

Փարիզ հասան Լիլի հարցաքննիչ դատաւորն ու դիակը քննող բժիշկը, մանրամասնութիւններ տալու համար Պ. Մաթիֆասի:

Ալմազեանի պաշտպան փաստաբանը՝ Լըկրան այսօր պաշտօնապէս պիտի պահանջէ հայ դերձակին ազատ արձակումը:

## Պէչէի Սաքա գնդակահարուած

Քապուլէն հասած անթել հեռագիր մը պաշտօնապէս կը հաստատէ թէ Պէչէի Սաքա (Աֆղանիստանի երբեմնի տէր ու տիրական Էմիր Հապիպուլլահը) եւ իր զինակիցներէն քանի մը հոգի գնդակահարուած են Շէրփուրի մէջ Նատիր Թագաւորի հրամանով: Հարաւային նահանգներու ցեղախումբերը, որոնց յանձնուած էին Չրկիրի տղան եւ ընկերները, պահանջած էին մահապատիժի ենթարկել զանոնք: Գնդակահարուածներուն մէջ են Պէչէի Սաքայի եղբայրը, ինչպէս նաեւ իր գլխաւոր զինակիցը Սէյիտ Հիւսէին:

## Բռնակալութիւնը Լեհաստանի մէջ

Լեհաստանի խորհրդարանը (Տիէթ կամ Սէյմ) փակ կը մնայ եօթը ամիսէ իվեր՝ մասնաւոր կարգադրութիւնովը կառավարութեան, որուն իրական ղեկը կը գտնուի պատերազմական նախարար մարաջախտ Փիլսուտսքիի ձեռքը: Խորհրդարանին վերաբացումը արտօնուեցաւ հինգշաբթի օր, վիճաբանութեան ենթարկելու եւ վաւերացնելու համար նոր ելմտացոյցը: Նոյն օրը, ժողովի բացման ներկայ ըլլալու համար կառավարութեան կողմէ խորհրդարան եկաւ մարաջախտ Փիլսուտսքի, ընկերակցութեամբ 100 (ոմանք կ'ըսեն 500) զինեալ սպաներու, որոնք դիրք գրաւեցին խորհրդարանի զանազան նրբանցքներուն մէջ.

Այս պայմաններուն տակ, խորհրդարանի նախագահը՝ ընկերվարական Տաշէնսքի՝ մերժեց բանալ ժողովը եւ յայտարարեց երեսփոխաններուն թէ խորհրդարանի բացումը յետաձգուած է մինչեւ նոր տնօրինութիւն: Կը կարծուի թէ կա՛մ խորհրդարանը լուծուելով նոր ընտրութիւններ պիտի կատարուին եւ կամ պիտի ջնջուի խորհրդարանային դրութիւնը:



## Հ. Յ. Դ.

ԳԱՒԱՌ

Լիոնի Վրէժ խումբի ընկերա դասախօսական ժողովը վաղը Չորեքշաբթի իրիկուն ժամը 8ին Հ. Յ. Դ. ժողովրդային Գրադարանը: Կը խօսի ընկեր Բաբկէն Աղաբէկեան, նիւթ՝ «Հ. Յ. Դ. Ծրագիր»ը: Կը հրաւիրուին քոյր խումբերու բոլոր ընկերները: Սրահին դուռը կը փակուի ժամը ճիշտ 8.30ին,Ներկայանալ անդամատետրով:

Հ. Յ. Դ. Լիոնի ժողովրդային Գրադարանը բաց է Երկուշաբթի եւ Չորեքշաբթի ժամը 7—8 եւ Հինգշաբթի օրերը ժամը 7.8.30: Դիմել՝ գրապահ ընկ. Գուրգէն Յովհաննէսեանի:

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ԿՈՄԻՏԱՍ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ անդամները եւ մասնակցիլ փափաքողները կը հրաւիրուին այս Ուրբաթ իրիկուն ժամը 8ին, եկեղեցւոյ խորհրդարանը: Անդամներուն ներկայութիւնը անհրաժեշտ է:

ՈՒՐՖԱՅԻ Հայրենակցական Միութեան ընդհ. ժողովը այս Շաբաթ իրիկուն Լա Փըթիթ Սուրսի մէջ, մէթրօ Օտէօնի դիմաց: Բոլորին ներկայութիւնը անհրաժեշտ է:

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ԿՐԸՆՈՊԼԸ, Կ. Բէօսէեան.— Դրօշակի տարեկանն է 25 ֆր.: Հասցէ՝ Mlle S. Agopian, 5 rue des Gobelins, Paris (13e).



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: H. STÉPHAN

# ԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

կազմակերպուած նախկին պատերազմիկ Հայ Սպաներու Միութեան կողմէ, 16 Նոյեմբեր Շաբաթ իրիկուն ժամը 9էն մինչեւ առաւօտ 8 rue Jean Goujon, Մէթրօ Champs Elysées եւ Alma:

Գեղարուեստական բաժնին սիրայօժար կը մասնակցին՝ Տիկիններ Ագոնց, Վարիա Լասկա, Մ. Միրիմանեան, Մ. Սուրաբեան, Լ. Թումանեան, Օր. Ե. Միրիմանեան, Պ. Պ. Այվազ, Ազգիբէկեան, Ս. Մակարեան, Ս. Նաւասարդեան, Կ. Տէր Աբրահամեան, Թառիստ Ժօրժ: Ջիւրեբը կ'ընդունի Տիկ. Խատիսեան: Մինչեւ լոյս պար: ձոխ պիւֆէ: Մուտք՝ 15 ֆրանք, տոմսերու համար դիմել Պ. Առաքելեանի, 4 rue Darcet, Փարիզ:

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ԱՅՍՕՐ Կիրակի ժամը 10ին ֆրանսական բանակի նահատակ Հայ կամաւորներու յիշատակին հոգեհանգստեան արարողութիւն պիտի կատարուի Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ: Մանաւոր հրաւէրով ներկայ պիտի գտնուին նաեւ ֆրանսացի պաշտօնական անձնաւորութիւններ:








IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: H. STÉPHAN

